Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


| | Էջ |
|---|---|
| ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԱՆԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԼՈԿԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՀԱՄԱՐ | 1 |
| **Ագիտացիոն աշխատանքի փորձից** | |
| Լ. ՂԱՐԻԲՅԱՆ.— Ագիտպունկտի օրինակելի աշխատանքը | 8 |
| **Օգտագործիր զրույցի ժամանակ** | |
| ՆՈՐ, ՓԱՌԱՀԵՂ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՏԱՐԻՆ | 18 |
| **Օգնություն ագիտատորներին** | |
| ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ | 26 |
| ՆՈՐ ԳՐՔԵՐ | 49 |



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Կ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին:
Հեռախոս՝ 2—52—78:


# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԱՆԿՈՒՍԱԿՑԱ-ԿԱՆՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԼՈԿԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՀԱՄԱՐ

*Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների ընտրությունները քաղաքական կարևոր նշանակություն ունեցող իրադարձություն են մեր երկրի կյանքում: Այդ ընտրությունները անց են կացվում սովետական մարդկանց կողմից ցուցաբերվող մեծ ակտիվության պայմաններում:*

*Սովետական ընտրողները բազմամարդ ժողովներում միահամուռ կերպով առաջադրել են դեպուտատության իրենց թեկնածուներին:*

*Սովետական ժողովրդի առաջին թեկնածուն ընկեր Ստալինն է:*

*Առաջադրելով ընկեր Ստալինի թեկնածությունը սովետական մարդիկ արտահայտում են իրենց անսահման սերն ու հավատարմությունը բոլշևիկների պարտիայի, սովե-*

տական պետության, ժողովուրդների մեծահանճար առաջնորդ, ուսուցիչ և հայր ընկեր Ստալինի նկատմամբ։

Անսահման է հայ ժողովրդի երախտագիտության։ Ժողովուրդների մեծ առաջնորդ, սիրելի և հարազատ Ստալինը տվել է իր համաձայնությունը՝ քվեարկվելու որպես Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ՝ Երևանի Ստալինյան ռայոնի Գործարանային № 1 ընտրական օկրուգում։ Ի պատասխան հարազատ Ստալինի կողմից արժանացած այդ մեծ վստահության, ռեսպուբլիկայի մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները աշխատում են բազմապատկված եռանդով՝ ի փառս մայր Հայրենիքի։

Նախընտրական ժողովներում ունեցած իրենց ելույթների մեջ ընտրողները սովետական քաղաքացու օրինական հպարտությամբ խոսում են մեր Հայրենիքի ձեռք բերած համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող հաղթանակների մասին, որոնց կազմակերպիչն ու ոգեշնչողը մեծ Ստալինն է։ Ստալինի անվան հետ մեր ժողովուրդը իրավամբ կապում է իր երջանկությունը, իր ներկան ու գալիքը։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դե-



պուտատության թեկնածուներ են գրանցվել մեծ Ստալինի մերձավոր զինակիցներ Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովը, Գեորգի Մաքսիմիլիանովիչ Մալենկովը, Անաստաս Իվանովիչ Միկոյանը, Լավրենտի Պավլովիչ Բերիան, Հայաստանի բոլշևիկների մարտական ղեկավար Գրիգոր Արտեմի Հարությունյանը։

Առաջադրված դեպուտատության թեկնածուների թվումն են մեր ռեսպուբլիկայի բանվորների, կոլխոզնիկների և ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչները։

Դեպուտատության թեկնածուների առաջադրումն ու գրանցումն ավարտված է։ Այժմ մենք թևակոխում ենք ընտրությունների նախապատրաստման ոչ պակաս կարևորություն ունեցող մի շրջան՝ թեկնածուների օգտին ագիտացիա ծավալելու շրջանը։

Մեր ռեսպուբլիկայի ագիտատորների բազմահազար բանակը ագիտացիոն աշխատանքի հսկայական փորձ է կուտակել տեղական Սովետների անցյալ ընտրությունների ընթացքում։ Կարևորն այն է, որ լայնորեն օգտագործվի կուտակված այդ հարուստ փորձը։ Ագիտատորները նոր ուժով պիտի ծավալեն իրենց բեղմնավոր գործունեությունը՝ ընտրողների շրջանում։ Նրանք պար-

տավոր են ծանոթացնել ամեն մի ընտրողի իր դեպուտատության թեկնածուի կյանքի ու գործունեության հետ։

Հայտնի է, որ նույն ձեռնարկության, կամ հիմնարկության, բանվորներն ու ծառայողները մասնակցելու են ընտրություններին տարբեր ընտրական տեղամասերում՝ ըստ բնակության վայրի։ Ահա այս հանգամանքը պահանջում է, որպեսզի մեր ագիտատորները աշխատանք կատարեն ընտրողների հետ անմիջականորեն նրանց բնակավայրերում։ Ագիտացիոն աշխատանքի կենտրոնը պետք է լինի ընտրական տեղամասը։ Այստեղ կատարված աշխատանքը վճռական նշանակություն ունի ընտրությունների հաջող անցկացման գործում։ Դրա համար անհրաժեշտ է, որ ընտրական տեղամասերում ապահովված լինի ագիտպունկտերի արդյունավետ աշխատանքը, որտեղ պետք է ընտրողների համար անցկացվեն կոնսուլտացիաներ, զրույցներ, թերթերի ընթերցանություն, տեղեկանքներ տրվեն նրանց հետաքրքրող հարցերի մասին։

Ագիտպունկտերը պիտի զարդարել մեծ ճաշակով։ Այնտեղ պետք է լինեն պարտիայի և կառավարության ղեկավարների պորտրետները, դեպուտատության թեկնածուների



կենսագրությունները՝ նրանց նկարներով, քաղաքական գրքեր, թերթեր, ամսագրեր և անհրաժեշտ այլ նյութեր ու գրականություն։

Մեր ագիտացիոն ամբողջ աշխատանքը պետք է խպաս դրվի Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունները հաջող նախապատրաստելուն և անցկացնելուն։ Ամեն մի ագիտատոր կարող է հետաքրքիր թեմաներ գտնել իր զրույցների համար։ Ամեն մի ագիտատորի պատվի գործն է պատմել ընտրողներին մեր մեծ Հայրենիքի ձեռք բերած նվաճումների մասին, նվաճումներ, որոնց հասել է մեր ժողովուրդը բոլշևիկների պարտիայի, Սովետական կառավարության և աշխատավոր մարդկության մեծահանճար առաջնորդ, դեպուտատության համաժողովրդական թեկնածու Իոսիֆ Վիսարիոնովիչ Ստալինի ղեկավարությամբ։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի նախորդ ընտրություններից հետո անցած տարիների ընթացքում վիթխարի փոփոխություններ են կատարվել նաև մեր ռեսպուբլիկայի կյանքում։ Կառուցվել են բազմաթիվ նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, դպրոցներ ու ակումբներ։ Մերկ տարածությունների վրա բարձրացել են բանվորական ավաններ, փոխվում ու բարեկարգվում են մեր

կոլխոզային գյուղերը։ Ե՛լ ավելի է բարձրացել մեր աշխատավորության բարեկեցության մակարդակը։ Ագիտացիայի համար հրաշալի նյութ կարող են ծառայել մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաքի նվաճումները։ Հայտնի է, որ բազմահազար ընտրողների աչքի առջև արագորեն վերափոխվում և միանգամայն անճանաչելի է դառնում մեր Երևանը։ Նրա գեղեցիկ շենքերի, հրապարակների, պողոտաների, փողոցների վեհությամբ հրապուրված ոգեշունչ բանաստեղծություններ են գրում պոետները, երգեր հորինում՝ կոմպոզիտորները։ Այս ամենը չի կարող չոգեվորել ագիտատորին, եթե նա նպատակ դնի իր առաջ՝ ընտրողներին պատմել մեր մայրաքաղաքի մասին։

Ինչպես ամեն մի քաղաքական աշխատանք, այնպես էլ ագիտացիոն աշխատանքը չի կարող տարվել միօրինակ ու շաբլոն ձևով։

Ագիտատորը իր թեման մշակելիս պետք է ձգտի այն բանին, որ հետաքրքիր անցնի իր զրույցը։ Իսկ դրա համար նա պետք է խուսափի ընդհանուր դատողություններից, տրաֆարետ բառերից ու նախադասություններից. նա պետք է խոսի կոնկրետ, պարզ, անբռնազբոսիկ, ունկնդիրների համար հասկանալի լեզվով։



Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստության այս օրերին մեծ պարտականություններ են դրված մեր ագիտատորների վրա։ Նրանք իրենց բեղմնավոր գործունեությունը ամբողջովին պիտի ուղղեն այդ քաղաքական մեծ նշանակություն ունեցող կամպանիան հաջող անցկացնելու համար։ Կասկած չկա, որ այս անգամ էլ, ինչպես միշտ, փայլուն հաղթանակ կտանի կոմունիստների և անկուսակցականների անպարտելի բլոկը։

—O—

# ԱԳԻՏՊՈՒՆԿՏԻ ՕՐԻՆԱԿԵԼԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ

*Ցնծագին օրեր են ապրում մեր ռեսպուբլիկայի աշխատավորները։ Սովետական ժողովրդի և պրոգրեսիվ մարդկության հանճարեղ առաջնորդ, հայ ժողովրդի մեծ ազատարար Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը իր համաձայնությունն է տվել որպես Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու քվեարկվելու Երևանի Ստալինյան ռայոնի Գործարանային № 1 ընտրական օկրուգում։ Ռեսպուբլիկայի մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների, երկաթուղային հանգույցի, նորակառույցների աշխատողների կոլեկտիվներն իրենց միտինգներում ու ժողովներում միահամուռ կերպով որոշումներ են ընդունում՝ աշխատանքային նորանոր սխրագործություններով հավերժացնել հայ ժողովրդի կյանքի այս կարևոր իրադարձությունը։*



*Առանձնապես մեծ ցնծություն է տիրում Երևանի Ստալինյան ռայոնի Գործարանային № 1 ընտրական օկրուգի ընտրողների մեջ, որոնց բախտ է վիճակվել քվեարկելու հարազատ Ստալինի օգտին։ Օկրուգի յուրաքանչյուր ընտրող տոգորված է մի բուռն ցանկությամբ՝ ինչպես երախտահատույց լինել հարազատ հայր Ստալինին այդ մեծ վստահության համար, ինչպես ավելի լավ արդարացնել այդ վստահությունը։*

*Օկրուգի ընտրողների այդ բուռն խանդավառությունը և ոգևորությունը գլխավորելու, ավելի լավ աշխատելու համար նրանց օգնելու գործում մեծ անելիքներ ունեն այնտեղի ագիտպունկտերը։ Ագիտպունկտերում պետք է ընտրողները, ագիտատորներն ստանան իրենց հետաքրքրող հարցերի պատասխանը, հետաքրքիր զեկուցումներ, զրույցներ լսեն դեպուտատության իրենց թեկնածուի կյանքի ու ռևոլյուցիոն գործունեության մասին, մեծ Ստալինի գլխավորությամբ կոմունիզմի կառուցման գործում մեր երկրի ձեռք բերած պատմական խոշոր հաջողությունների մասին, միջազգային հարցերի մասին։*

*Իր առջև դրված այս խնդիրները հաջողությամբ է կատարում Գործարանային № 1 օկրուգի № 1 ընտրական տեղամասի ագիտպունկտը, որը տեղավորված է Ս. Մ. Կիրովի անվան գործարանի բանվորական ավանի շենքերից մեկում։ Այս ագիտպունկտը կազմակերպվեց 1950 թվականին Հայկական ՍՍՌ տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստական աշխատանքների սկսման հենց առաջին օրերին։ Գործարանի պարտիական կազմակերպությունը ագիտպունկտի վարիչ առաջադրեց ընկ. Վ. Ղազարյանին, որը ագիտացիոն աշխատանքի բազմամյա փորձ ունի։*

*Այն շենքը, ուր տեղավորված է ագիտպունկտը, դեռ հեռվից գրավում է մարդկանց ուշադրությունը։ Շենքի ամբողջ ճակատը ծածկել է կարմիր կտավով երեսպատված Կրեմլի հսկա մակետը, որի մեջտեղում փակցված է ընկեր Ստալինի մեծադիր նկարը։ Ագիտպունկտի մուտքի մոտ փակցված են կարմիր կտավների վրա գրված լոզունգները։ Գիշերը, շենքի ամբողջ ճակատը լուսավորված է էլեկտրական պայծառ լուսավորությամբ։*



*Ագիտպունկտի համար հատկացված է մի ընդարձակ, լուսավոր դահլիճ, կահավորված սեղաններով ու նստարաններով։ Այստեղ ագիտատորներն ու ընտրողները կարող են գտնել իրենց անհրաժեշտ դրականությունը, ամենօրյա թերթեր, Լենինի և Ստալինի աշխատությունները։ Ագիտատորներն այստեղ բոլոր հնարավորություններն ունեն ընտրողներին ծանոթացնելու դեպուտատության իրենց թեկնածուի՝ Ի. Վ. Ստալինի կյանքի և ռեոլուցիոն գործունեության հետ։ Դահլիճի երկու պատերին փակցված են մեծ առաջնորդի կյանքը և ռեոլուցիոն գործունեությունը պատկերող բազմաթիվ ցուցադրական նյութեր՝ ֆոտո-փաստաթղթեր, քարտեզներ անհրաժեշտ բացատրական տեքստերով։ Ագիտպունկտում հերթապահում են կոնսուլտանտները, որոնք զրուցում են ագիտատորների հետ, հանձնարարում անհրաժեշտ գրականություն և այլն։*

*Ագիտպունկտի ագիտատորների կոլեկտիվը բաղկացած է 52 ագիտատորներից։ Դրանք գործարանի ինժեներներ են, տեխնիկներ, ծառայողներ, ագիտացիայի գործը սիրող, կարող մարդիկ։ Յուրաքանչյուր ագիտատոր պարապում է 15—17 ընտրողի հետ։*

Այդ ագիտատորին հնարավորություն է տալիս սիստեմատիկ կերպով զրույցներ անցկացնելու ընտրողների բնակարաններում, ավելի լավ և բազմակողմանիորեն սպասարկելու նրանց։

Ագիտպունկտն իր ամբողջ աշխատանքը կատարում է նախօրոք կազմած և պարտիական կազմակերպության կողմից հաստատված պլանով. ըստ այդ պլանի տեղի են ունենում ագիտատորների սեմինար պարապմունքները, դասախոսությունները, ժողովները, հավաքները և մյուս միջոցառումները։ Ագիտպունկտը հաճախակի օգտագործում է գործարանի ակումբը, ուր ընտրողների համար կազմակերպվում են զեկուցումներ, կինո-դիտումներ, երեկույթներ։

Վերջին երկու ամիսների ընթացքում ընտրողների համար զեկուցումներ են կարդացվել «Ի. Վ. Ստալինի մանկությունը և ռևոլյուցիոն գործունեության սկիզբը», «Լենինը և Ստալինը Սովետական պետության և բոլշևիկների պարտիայի ստեղծողներն են», «Ստալինը հայ ժողովրդի ազատարարն է» և մի շարք այլ թեմաներով։ Հատուկ զեկուցումներ են կարդացվել երիտասարդ ընտրողների, ինչպես նաև կանանց համար։



Այժմ մի քանի օրինակներով ցույց տանք, թե ագիտատորներն ինչպես են անցկացնում իրենց զրույցները, ինչպիսին է նրանց աշխատանքի մեթոդը։ Ինչպես արդեն ասացինք, ագիտպունկտում շաբաթական երկու անգամ տեղի է ունենում ագիտատորների սեմինար պարապմունք։ Այդ պարապմունքներին ագիտատորները պատմում են իրենց անցկացրած զրույցների մասին, հայտնում, թե ընտրողներին հատկապես ինչ հարցեր են հետաքրքրում, իրենց կարծիքը հայտնում այս կամ այն հարցի շուրջը զրույցը անցկացնելու մեթոդի մասին։ Այստեղ սեմինար անցկացնող ընկերը ցուցումներ է տալիս, թե մոտակա օրերին ինչ հարցերի շուրջը և ինչ մեթոդով պետք է անցկացնել զրույցները։ Ագիտատորներին մշտապես ցուցում է տրվում, որպեսզի նրանք իրենց զրույցները, ինչ հարցի շուրջ էլ լինեն նրանք, կապեն առօրյա կյանքի հետ, կոնկրետ կերպով ցույց տան այն հաղթանակները, որոնք մեր երկիրը ձեռք է բերել բոլշևիկների պարտիայի, մեծ Ստալինի ղեկավարությամբ։

Ահա ագիտատոր ընկ. Հարություն Գրիգորյանի անցկացրած զրույցներից մեկը,

*որի թեման էր՝ «Ինչ տվեց մեր երկրին հետպատերազմյան ստալինյան նոր հնգամյակը»։ Մեր ամբողջ երկրի տնտեսական ու կուլտուրական աճը ցույց տվող փաստերը ագիտատորը վերցրել էր Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1950 թվականի նոյեմբերի 6-ին ընկ. Ն. Ա. Բուլգանինի տված զեկուցումից։ Բայց ագիտատոր Գրիգորյանը չէր բավարարվել միայն այդ նյութերով։ Նա բազմաթիվ տեղեկություններ էր հավաքել նաև այն մասին, թե նոր հնգամյակի ընթացքում ինչպիսի հաջողություններ ձեռք բերեց գործարանը, ինչպես աճեց իրենց՝ գործարանի աշխատողների ռեալ աշխատավարձը, ինչ բարեկարգումներ կատարվեցին բանավանում։*

*Ունկնդիրներն այդ զրույցը լսեցին մեծ հետաքրքրությամբ և բազմաթիվ հարցեր տվեցին ագիտատորին։ Իսկ տնային տնտեսուհի Վարդուշ Գյոզալյանն ասաց.*

*— Ճիշտ է ասում ընկեր Գրիգորյանը։ Մի նայեք, միայն այս մեկ տարվա ընթացքում ինչպես փոխվեց մեր ավանը։ Բոլոր մայթերը ասֆալտապատեցին, ծաղկանոցները ցանկապատեցին, ինչքան նոր ծառեր տնկեցին։ Հապա մեր շենքերի տաքացո՞ւմը։*



*Կաթսաները փոխեցին, նոր լավ կաթսաներ դրեցին, այժմ բնակարաններս այնքան տաք է, որ ուզում ես լուսամուտները բաց անել։*

*— Ընկեր Գրիգորյան, իսկ ի՞նչ նոր բաներ են կառուցվելու մեր ավանում այս տարի,— հարցրեց ունկնդիրներից մեկը։*

*Լինելով գործարանի բաժիններից մեկի վարիչը, ագիտատոր Գրիգորյանը մոտավորապես ծանոթ էր, թե ընթացիկ տարում ինչ նոր աշխատանքներ են կատարվելու բանավանում, բայց նա չուզեց կցկտուր պատասխան տալ այդ հարցին, այլ խոստացավ այդ մասին խոսել հաջորդ զրույցի ժամանակ։*

*Իրենց անցկացրած յուրաքանչյուր զրույցի մասին ագիտատորները գրանցում են կատարում ագիտպունկտում եղած հաշվառման տետրակում։ Կարդալով ագիտատոր Գրիգորյանի այդ զրույցի մասին, ագիտպունկտի վարիչ ընկ. Ղազարյանը որոշեց այսպիսի կետ մտցնել առաջիկա ամսվա աշխատանքների պլանում. «Մեր գործարանի նվաճումները հետպատերազմյան նոր հըն-*

գամյակումը։ Նա հանձնարարեց ագիտատոր, ինժեներ ընկ. Աշոտ Բաբայանին՝ նյութեր հավաքել և պատրաստվել այդ հարցի շուրջը սեմինար պարապմունք անցկացնելու ագիտատորների հետ։

Ընտրողներին ընկեր Ստալինի կյանքին և ռևոլյուցիոն գործունեության հետ ծանոթացնելու համար, № 1 տեղամասի ագիտպունկտը կիրառում է ագիտացիոն աշխատանքի բազմապիսի ձևեր՝ կինոնկարների ցուցադրումներ, ինքնագործունեության երեկոներ, կոլեկտիվ ռադիոլսումներ, էքսկուրսիաներ դեպի ընկեր Ստալինի Մոնումենտ-քանդակը և այլն։

Ագիտատորներն իրենց խմբակները հաճախ բերում են ագիտպունկտ, ուր ընկեր Ստալինի կյանքի և ռևոլյուցիոն գործունեության մասին զրույցներն անցկացնելիս օգտագործում են այնտեղ եղած ցուցադրական հարուստ նյութերը։

Երևանի Ստալինյան ռայոնի Գործարանային № 1 ընտրական օկրուգի № 1 ընտրա-



կան տեղամասի ագիտպունկտը դարձել է ընտրողների մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանք կատարելու կենտրոնը, ընտրողների սիրելի վայրը։ Շնորհիվ ագիտկոլեկտիվի ջանքերի, նրա աշխատանքը գնալով ավելի նպատակասլաց ու արդյունավետ է դառնում։ № 1 ընտրական տեղամասի ընտրողները մեծագույն բերկրանքով են սպասում փետրվարի 25-ին՝ իրենց ձայնը տալու համաժողովրդական առաջին թեկնածու հարազատ Ստալինի օգտին։

Լ. ՂԱՐԻԲՅԱՆ

—∞—

# ՆՈՐ, ՊԱՆԾԱԼԻ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՏԱՐԻՆ

*Հրապարակվել է ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1950 թվականի պետական պլանի կատարման արդյունքների մասին։ Այդ հաղորդագրությունը մեկ անգամ ևս ցույց է տալիս, թե ինչպես բոլշևիկների պարտիայի, մեծ Ստալինի ղեկավարությամբ մեր երկիրը հսկայական քայլերով առաջ է ընթանում դեպի կոմունիզմ։ Հաղորդագրության համառոտ թվերը մի նոր ապացույց են այն բանի, որ տնտեսության կազմակերպման սոցիալիստական սիստեմը ամենաճիշտ և առաջավոր սիստեմն է, որը ազատ է կապիտալիստական սիստեմը հիմքից ցնցող կրիզիսներից, գործազրկությունից, աշխատավորական լայն մասսաների քայքայումից։*

*Համախառն արտադրանքի արտադրության 1950 թվականի տարեկան պլանն ամբողջու-*



*թյամբ վերցրած արդյունաբերության գծով կատարվել է 102 տոկոսով։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1950 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, աճել է 23 տոկոսով։*

*Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման 1950 թվականի համար սահմանված պլանը կատարվել է։ Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, համադրական գներով, կազմել է մոտ 6 տոկոս։*

*1950 թվականին, սահմանված պլանին համապատասխան, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում մեծ աշխատանք կատարվեց նոր տեխնիկայի արմատավորման գծով, որի հետևանքով լուրջ հաջողություններ ձեռք բերվեցին ժողովրդական տնտեսության հետագա տեխնիկական վերազինման, աշխատատար ու ծանր աշխատանքների մեքենայացման մակարդակի բարձրացման և արտադրական պրոցեսների ինտենսիֆիկացման գործում։*

*Ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերի կարիքները բավարարելու համար հայրենական արդյունաբերությունը 1950 թվականին ստեղծել է բարձր-արտա-*

գյուղական մեքենաների ու մեխանիզմների ավելի քան 400 նոր տիպեր ու մարկաներ։

Պատրաստվել են գյուղատնտեսական նոր մեքենաներ, որոնք հնարավորություն են տալիս է՛լ ավելի մեծացնելու հացահատիկային, տեխնիկական և բանջարանոցային կուլտուրաների ցանքի ու բերքահավաքի աշխատանքների մեքենայացումը, այդ թվում՝ հացահատիկային բարձր-արտադրողական նոր կոմբայններ և ճակնդեղի բերքահավաքի եռաշար կոմբայններ։

1950 թվականին ձեռք են բերվել նոր հաջողություններ՝ սոցիալիստական հողագործության հետագա վերելքի, կոլխոզների ու սովխոզների հանրային անասնաբուծության զարգացման և կոլխոզների կազմակերպական-տնտեսական ամրապնդման գործում։

1950 թվականին ստացվել է հացահատիկային կուլտուրաների, բամբակի ու շաքարի ճակնդեղի լավ բերք, ինչպես նաև տեխնիկական այլ կուլտուրաների, բանջարեղենի ու կարտոֆիլի լավ և բավարար բերք։

1950 թվականին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմել է 7 միլիարդ 600 միլիոն փութ։ Հացահատիկային կուլտուրաների բերքատվության 1950



թվականի համար հնգամյա պլանով սահմանված առաջադրանքը կատարվել է գերազանցումով։

Բամբակի համախառն բերքը կազմել է 3 միլիոն 750 հազար տոննա և հնգամյա պլանով 1950 թվականի համար սահմանված առաջադրանքը գերազանցել է 650 հազար տոննայով։

Շաքարի ճակնդեղի համախառն բերքը 1950 թվականին 1949 թվականի բերքից գերազանցել է 1 միլիոն 200 հազար տոննայով։

Բոլոր կուլտուրաների ցանքատարածությունները 1950 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, ավելացել են 6,6 միլիոն հեկտարով։

Անցած տարում է՛լ ավելի է աճել և ամրապնդվել գյուղատնտեսության նյութական-տեխնիկական բազան։

Գյուղատնտեսությունը 1950 թվականին ստացել է ավելի քան 180 հազար տրակտոր՝ 15 ուժանու փոխադրած, 46 հազար կոմբայն, այդ թվում՝ 23 հազար ինքնագնաց կոմբայն, 82 հազար բեռնատար ավտոմոբիլ և ավելի քան 1 միլիոն 700 հազար կցորդ գործիք ու գյուղատնտեսական այլ մեքենաներ։

նուրջ հաջողություններ են ձեռք բերվել կոլխոզային ու սովխոզային հանրային անասնաբուծության զարգացման գործում։

Անասունների ընդհանուր գլխաքանակը բոլոր կատեգորիաների տնտեսություններում՝ կոլխոզներում, սովխոզներում, կոլխոզնիկների և բանվորների ու ծառայողների տնտեսություններում 1950 թվականի վերջին կազմել է. խոշոր եղջերավոր անասուններինը՝ 57,2 միլիոն, այդ թվում կովերինը՝ 24,2 միլիոն, խոզերինը՝ 24,1 միլիոն, ոչխարներինն ու այծերինը՝ 99 միլիոն, ձիերինը՝ 13,7 միլիոն գլուխ։

Երկաթուղային տրանսպորտի 1950 թվականի բեռնաշրջանառության տարեկան պլանը կատարվել է 105 տոկոսով։

1950 թվականին շարունակվում էր սովետական առևտրի հետագա ծավալումը։ 1950 թվականի ընթացքում պետական և կոոպերատիվ առևտրի գծով բնակչությանը վաճառվել է. համադրական գներով, 30 տոկոսով ավելի ապրանք, քան 1949 թվականին։ Ընդ որում, պարենային ապրանքների վաճառքը ավելացել է 27 տոկոսով և արդյունաբերական ապրանքների վաճառքը՝ 35 տոկոսով։



ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ բանվորների ու ծառայողների թիվը 1950 թվականի վերջին կազմում էր 39,2 միլիոն մարդ և 2 միլիոն մարդով ավելի էր, քան 1949 թվականի վերջին։

Բանվորների աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ 1950 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, աճել է 12 տոկոսով։

1950 թվականը բնորոշվում է կուլտուրական շինարարության հետագա զարգացմամբ և աշխատավորների կուլտուրական մակարդակի բարձրացմամբ։

Տարեվերջին տարրական, յոթնամյա ու միջնակարգ դպրոցներում, տեխնիկումներում և այլ միջնակարգ ուսումնական հաստատություններում սովորում էր 37 միլիոն մարդ. այդ ուսումնական հաստատություններում զբաղված ուսուցիչների թիվը հասավ 1.600 հազար մարդու, և 80 հազարով ավելի էր, քան 1949 թվականին։

1950 թվականին 880 բարձրագույն ուսումնական հաստատություններում (ներառյալ հեռակաները) սովորում էր 1.247 հազար ուսանող. ուսանողների թիվը 1949 թվակա-

նի համեմատությամբ աճեց 115 հազար մարդով։

1950 թվականին հրատարակված գրքերի տիրաժը անցյալ տարվա համեմատությամբ ավելացավ 21 տոկոսով։

Կինոթատրոնների և շրջիկ կինոների թիվը 1950 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացավ ավելի քան 5 հազարով։ 1950 թվականին ընդլայնվեց հիվանդանոցների, ծննդատների և այլ բուժհիմնարկների, ինչպես նաև սանատորիաների ու հանգստյան տների ցանցը։ Հիվանդանոցներում ու ծննդատներում մահճակալների թիվը 1949 թվականի համեմատությամբ աճեց 47 հազարով։

Մեր ժողովրդական տնտեսության վերելքը ուղեկցվում է ազգային եկամտի ավելացումով ու աշխատավորների նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի հետագա աճմամբ։ ՍՍՌՄ Ազգային եկամուտը 1950 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, աճել է 21 տոկոսով։

1950 թվականի մարտի 1-ից մասսայական սպառման բոլոր ապրանքների գները իջեցնելու շնորհիվ 15 տոկոսով բարձրացավ բանվորների ու ծառայողների ռեալ աշխա-



տավարձը և 16 տոկոսով իջան գյուղացիների ծախսերը էժանացված արդյունաբերական ապրանքներ գնելու համար։

Բացի դրանից, բնակչությունը 1950 թվականին, ինչպես և նախորդ տարիներին, ի հաշիվ պետության ստացավ նպաստներ և բանվորների ու ծառայողների սոցիալական ապահովագրության գծով վճարվող դրամարներ, կենսաթոշակներ սոցիալական ապահովության գծով, ձրի և արտոնյալ գներով սանատորիաների, հանգստյան տների ու մանկական հիմնարկների ուղեգրեր, նպաստներ բազմազավակ և միայնակ մայրերին, ձրի բուժօգնություն, ձրի ուսուցում և որակավորման բարձրացում, թոշակներ սովորողների և մի շարք այլ վճարումներ ու արտոնություններ։ Այնուհետև, բոլոր 39 միլիոն բանվորներն ու ծառայողները ստացան պետության հաշվին հատուցվող առնվազն երկու շաբաթ տևողությամբ արձակուրդներ, իսկ մի շարք պրոֆեսիաների աշխատողներ՝ ավելի երկարատև արձակուրդներ։ 1950 թվականին բնակչությունը ի հաշիվ պետության ստացավ ավելի քան 120 միլիարդ ռուբլու այդպիսի վճարումներ և արտոնություններ։

—○—

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Նյութեր զեկուցումների և զրույցների համար՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների առթիվ*)

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

*Հետպատերազմյան նոր հնգամյակում խոշոր հաջողությունների է հասել ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Բոլշևիկյան պարտիայի և Սովետական կառավարության ամենօրյա հոգատարությամբ ծաղկում և բարգավաճում է կոլխոզային գյուղը։ Կոլխոզային ուղին, որը միակ ճիշտ ուղին է գյուղատնտեսությունը սոցիալիստական ձևով կազմակերպելու, լայն հնարավորություններ է ընձեռնում գյուղի և քաղաքի միջև եղած տարբերությունները վերացնելու և գյուղացիության ունևոր կյանքի համար։ ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ*

*) Սկիզբը տես «Ագիտատորի բլոկնոտ»-ի № 1-ում։



*Կենտրոնական Կոմիտեի 1939 թվականի մայիսի 27-ի՝ «Կոլխոզների հանրային հողերը շռայլումից պահպանելու միջոցառումների վերաբերյալ» որոշումը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի 1946 թվականի սեպտեմբերի 19-ի՝ «Կոլխոզներում Գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումներին վերջ տալու ձեռնարկումների մասին», «Կոլխոզների հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանի մասին» որոշումները, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը, ինչպես նաև բնության վերափոխման ստալինյան պլանի հաջող կենսագործումը հանդիսանում են կոլխոզային կարգի առավել ամրապնդման և կոլխոզների ունևոր կյանքի ստալինյան հոգատարության փայլուն արտահայտություն։*

*Սովետական գյուղացիությունը միանգամայն նոր գյուղացիություն է, որի նմանը դեռ չի իմացել մարդկությունը։ Կոլխոզային կարգն իր կենսունակությունը էլ ավելի լավ դրսևորեց Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։*

*Սովետական Հայաստանի կոլխոզային*

գյուղի աշխատավորները պատմական կարճ ժամանակամիջոցում զգալի նվաճումներ ձեռք բերեցին ցանքատարածությունների ընդարձակման, բերքատվության բարձրացման, տեխնիկական կուլտուրաների, խաղողի, այգեգործության և այլ ասպարեզներում։ Ռեսպուբլիկայի ընդհանուր ցանքատարածությունները 1919 թվականի համեմատությամբ ընդարձակվել է 6 անգամ։ Ըստ առանձին կուլտուրաների ցանքատարածությունները ընդարձակվել են հետևյալ չափերով՝ հացահատիկային կուլտուրաներինը՝ չորս անգամ, բամբակինը՝ ավելի քան 28 անգամ, ծխախոտինը՝ 100 անգամ, բանջարա-բոստանային կուլտուրաներինը՝ 363 անգամ, կարտոֆիլինը՝ 9,7 անգամ, կերաբույսերինը՝ 400 անգամ։ Վերջին տարիների ընթացքում ռեսպուբլիկայում արմատացել է տեխնիկական այնպիսի արժեքավոր կուլտուրաների նոր մշակումը, ինչպիսին շաքարի ճակնդեղինըն է, խորդենին. հաջողությամբ մշակվում են մերձարևադարձային արժեքավոր կուլտուրաները։ Շաքարի ճակնդեղի բերքատվությունը ռեսպուբլիկայի կոլխոզներում, նրա արմատավորման առաջին տարվա համեմատությամբ (1932 թվականի), յուրաքանչյուր հեկտարից բարձրացել է 54,4 ցենտներով։ 1949 թվականին բամբակի համախառն արտադրանքը նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ կազմել է 130 տոկոս, ծխախոտինը՝ 240 տոկոս, կարտոֆիլինը՝ 321 տոկոս։ Հատուկ ուշադրություն է դարձվում ցորենի ցանքատարածությունների ընդարձակման վրա։ Սովետական Հայաստանի ամբողջ ցանքատարածության մեջ ցորենի տեսակարար կշիռը կազմում է 66,5 տոկոս, իսկ կոլխոզների հացահատիկային ցանքերի ընդհանուր տարածությունից 1950 թվականին ցորենը կազմեց 70 տոկոսը։



ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը 1950 թվի մայիսի 30-ին ընկեր Ստալինի առաջարկությամբ քննության առնելով Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի առաջարկը, ծրագրային որոշում ընդունեց Հայկական ՍՍՌ-ում ցորենի արտադրությունը ավելացնելու մասին։ Համաձայն այդ որոշման 1956 թվականին Սովետական Հայաստանի կոլխոզներում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները ավելանալու է 50 տոկոսով, այդ թվում ցորենինը՝ 80 տո-

կոսով։ Մինչև 1957 թվականը ցորենի յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասնելու է 27—29 ցենտների։ Այդ բոլորը պայմաններ կստեղծեն ռեսպուբլիկան սեփական հացի պաշարով ապահովելու համար։

Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում իռիգացիոն աշխատանքներին։ Լենինյան պատգամները իռիգացիայի վերաբերյալ Հայաստանի բոլշևիկները կենսագործում են անշեղ կերպով։ Ստալինի անվան, Դալմայի, Միկոյանի անվան, Լոռու, Գառնիի, Աղիամանի, Ստորին Զանգվի և այլ ջրանցքները ոռոգում են մի քանի տասնյակ հազար հեկտար հող։ Ավելի քան 211 հազար հեկտար տարածության հող ջրովի են։ Իրականացվում են Արզնի-Շամիրամ, Թալինի, Ներքին Զանգու ջրանցքի երկրորդ հերթի շինարարությունները, ջրհան կայաններ են կառուցվում Հոկտեմբերյանում, Վեդու շրջանում։ Ցամաքեցման և ոռոգումների աշխատանքներ են կատարվում Արարատյան դաշտավայրում, Արաղդայանի տափաստանում և այլուր։

Էլեկտրիֆիկացվում են կոլխոզներն ու գյուղատնտեսական աշխատանքները։



Գյուղատնտեսությունը հագեցվում է նորանոր մեքենաներով։ Մեքենատրակտորային կայանների թիվը 1940 թվականի 33-ից 1950 թվականին հասավ 46-ի։ Այդ նույն ժամանակամիջոցում տրակտորների քանակը մեծացել է ավելի քան 50 տոկոսով։ Հայաստանի կոլխոզների ցանքատարածությունների 99 տոկոսը մշակվում է ՄՏ կայանների միջոցով։

Խոշոր աշխատանք է կատարվել բնության վերափոխման ստալինյան պլանի կենսագործման ուղղությամբ։ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ նախատեսված է մինչև 1952 թվականը ռեսպուբլիկայի կոլխոզներում դաշտապաշտպան և անտառային շերտեր տնկել 10 հազար 700 հեկտար տարածության վրա։

Սոցիալիստական անասնաբուծությունը նույնպես քիչ հաջողություններ չունի։ Բոլոր կոլխոզներում ստեղծված են անասնապահական ֆերմաներ, իսկ շատ կոլխոզներ ունեն 4—8 ֆերմա։ Հայկական ՍՍՌ-ում մինչև 1950 թվականի հունվարի 1-ը խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը, 1919 թվականի համեմատությամբ, աճել է

148 տոկոսով, ոչխարներինը և այծերինը 260 տոկոսով, խոզերինը՝ 1.140 տոկոսով, ձիերինը՝ 60 տոկոսով։ Բարձրացել է անասունների մթերատվությունը, հետևողականորեն բարելավվում է անասունների ցեղայնությունը։ Կազմակերպվել են երկու մեքենա-անասնապահական կայաններ, որոնցից մեկը կազմակերպվել է 1949 թվականին և սպասարկում է Ստեփանավանի ու Կալինինոյի կոլխոզներին, իսկ երկրորդը՝ կազմակերպվել է 1950 թվականին ու սպասարկում է Ղուկասյանի և Ամասիայի կոլխոզներին։ Անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացումը առավել լայն չափերի հասցնելու նպատակով մինչև 1953 թվականը կազմակերպվելու են երեք նոր մեքենա-անասնապահական կայաններ։ Բարձրացել է կոլխոզային գյուղի կուլտուրան, կոլխոզների եկամուտները։ 1940 թվականի համեմատությամբ 1949 թվականին կոլխոզների դրամական եկամուտը աճեց 184 տոկոսով, անբաժանելի ֆոնդերը նույն ժամանակամիջոցում 269 միլիոն ռուբլուց հասան 790 միլիոն ռուբլու։ Այժմ ռեսպուբլիկայի կոլխոզների 13 տոկոսը միլիոնատեր են։ Արտաշատի շրջանի կոլխոզների



դրամական եկամուտը հասել է 72 միլիոն ռուբլու, Հոկտեմբերյանի շրջանում՝ 65 միլիոն ռուբլու, Էջմիածնի շրջանում՝ 28 միլիոն ռուբլու, Շամշադինի շրջանում՝ 22 միլիոն ռուբլու, Վեդու շրջանում 19,6 միլիոն ռուբլու։

Կոլխոզային գյուղում նշանավոր իրադարձություն է հանդիսանում կոլխոզների խոշորացումը, որը լիովին հնարավորություններ է տալիս գյուղատնտեսական աշխատանքները մեքենայացնելու, արտադրողականությունը բարձրացնելու, բերքատվությունը ավելացնելու համար։ Արդեն ակնբախ են խոշորացված կոլխոզների առաջին շրջանի նվաճումները և ցուցանիշները։

Սովետական Հայաստանի գյուղատնտեսության ֆրոնտի առավել աչքի ընկած աշխատողներից 2856 մարդ մինչև 1950 թվականի սեպտեմբերը պարգևատրվել է ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով, այդ թվում 104 մարդու շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։

Ձեռնադատանալով ձեռք բերած հաջողություններով, Սովետական Հայաստանի կոլտնտեսային գյուղի աշխատավորները պայքարում են նոր, ավելի բարձր նվաճումների համար։

## ԳԻՏՈՒԹՅԱՆ, ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ, ԱՐՎԵՍՏԻ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ

Հետպատերազմյան տարիներին բուռն կերպով ծաղկել է Սովետական Հայաստանի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, գիտությունը, գրականությունը և արվեստը։ Գիտության զարգացմանը խոշոր չափով նպաստում է ընկեր Ստալինի նախաձեռնությամբ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին ստեղծված Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան, որը այժմ միավորում է 30 գիտական ինստիտուտ և հաստատություն։ Արագորեն աճում են ռեսպուբլիկայի գիտական կադրերը։ Ներկայումս Սովետական Հայաստանում կան ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի 4 իսկական անդամ, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի 29 իսկական անդամ, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի 18 թղթակից-անդամ։



Ինչպես Սովետական Միության բոլոր գիտնականները, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի գիտնականները իրենց աշխատանքի մարտական ծրագիրն են դարձրել ընկեր Ստալինի 1946 թվականի փետրվարի 9-ի պատմական ելույթում տված ցուցումները՝ մոտ ժամանակները հասնել և զգալիորեն գերազանցել արտասահմանյան երկրներում գիտության ձեռք բերած նվաճումներից։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի նախորդ ընտրություններից հետո անցած ժամանակաշրջանում Սովետական Հայաստանի գիտնականները և գիտա-հետազոտական հաստատությունները հասել են լուրջ նվաճումների և փայլուն կերպով մշակել են մի շարք գիտական պրոբլեմներ։ Գիտությունների ակադեմիայի Ֆիզիկայի ինստիտուտի կոլեկտիվը, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի իսկական անդամներ Ա. Ալիխանովի և Ա. Ալիխանյանի ղեկավարությամբ, բեղմնավոր աշխատանք են կատարել գիտության մի շարք պրոբլեմների ուսումնասիրման բնագավառում և իրենց խոշոր հայտնագործումների համար արժանացել Ստալինյան մրցանակի։ Աստրոֆիզիկայի բնագավառում բացառիկ հաջողությունների է հասել Հայկական ՍՍՌ Գի-

տությունների Ակադեմիայի պրեզիդենտ, ակադեմիկոս Վ. Համբարձումյանը։ Ընկ. Վ. Համբարձումյանը իր նոր հայտնագործությունների համար երկու անգամ արժանացել է Ստալինյան մրցանակի։ Ստալինյան մրցանակի են արժանացել Բյուրականի աստղադիտարանի ավագ գիտական աշխատող Մարգարյանը, Գեոլոգիական ինստիտուտի մի խումբ երկրաբաններ և ուրիշներ։ Դրական արդյունքների են հասել Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Ջրա-էներգետիկ ինստիտուտի լաբորատորիան, Գենետիկայի ինստիտուտը և այլ ինստիտուտներ, առանձնապես սելեկցիայի, սովետական առաջավոր ագրոբիոլոգիայի նվաճումներն արմատավորելու, ցորենի նոր սորտերի ստեղծման և այլ գծով։

Ուժեղացել է գիտության և արտադրության կապը։ Գիտնականները նպաստում են տեխնիկական պրոգրեսին, օգնում են արմատավորելու արտադրության առաջավորների փորձը։

Մեծ չափով ընդարձակվել է ուսումնական հաստատությունների ցանցը։ Քաղաքում իրագործվում է միջնակարգ պարտադիր ուսուցումը, իսկ գյուղում՝ յոթնամյա։ Ռեսպուբլիկայում այժմ գործում է 1157 միջ-



նակարգ դպրոց (այդ թվում 26 երկաթուղային միջնակարգ դպրոց), որտեղ սովորում է ավելի քան 302 հազար աշակերտ։ Ռեսպուբլիկայի մանկավարժական 9 ուսումնարաններում սովորում է 2423 մարդ։ Բացի այդ, քաղաքներում և գյուղերում ստեղծված է 219 երեկոյան բանվորական և գյուղերիտ դպրոց, որտեղ ընդգրկված է ավելի քան 15.200 մարդ։ Սովետական Հայաստանում այժմ աշխատում է ավելի քան 15 հազար մանկավարժ։

Դպրոցներում 4-րդ դասարանի, 7-րդ դասարանի ավարտման համար պարտադիր քննությունների և 10-րդ դասարանի ավարտողների համար հասունության վկայականի քննությունների պրակտիկան կիրառելու շնորհիվ բարելավվել է ուսման դրվածքը և դասավանդման որակը։ Հատուկ ուշադրություն է դարձվում դպրոցները դասագրքերով ապահովելու գործին։ Միայն 1950 թվականին Հայպետհրատը հրատարակել է 68 անուն դասագիրք։

Ռեսպուբլիկայում կա 14 բարձրագույն ուսումնական հաստատություն, որտեղ սովորում է 10.500 մարդ, 1940 թվականի 7.426 մարդու փոխարեն, չհաշված հեռակայողներին։ Իսկ զանազան մասնագիտու-

թյամբ բարձրագույն ուսումնական հաստատություններին հեռակայում է ավելի քան 5.500 մարդ։

Ռեսպուբլիկան ծածկվել է գիտա-լուսավորական հաստատությունների՝ ակումբների, կուլտուրայի տների, կինո-թատրոնների, գրադարանների խիտ ցանցով։ 1946 թվականի 919 ակումբի փոխարեն 1950 թվականին կար 1.097 ակումբ։ Նույն ժամանակամիջոցում կուլտուրայի տների թիվը 33-ից հասել է 48-ի, ըստ որում կուլտուրայի 8 տուն շահագործման են հանձնվել 1950 թվականին։ Եթե 1946 թվականին ռեսպուբլիկայում կար 1497 գրադարան (այդ թվում դպրոցական և գերատեսչական), 5 միլիոն գրականության ֆոնդով, ապա այժմ կա 2495 գրադարան՝ 7 միլիոն գրականության ֆոնդով։ Ներկայումս ռեսպուբլիկայում կա 12 թանգարան 10 կուլտուրայի և հանգստի պարկ։

Խոշոր չափով բարձրացել է աշխատավորության մեջ կատարվող գիտա-լուսավորական դասախոսությունների քանակն ու որակը։ Այսպես, օրինակ, 1946 թվականին կարդացված 2242 դասախոսության փոխարեն 1950 թվականին Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Կուլտուր-լուսավո-



րական հիմնարկների գործերի կոմիտեի Կենտրոնական դասախոսական բյուրոյի ուժերով կարդացվել է ավելի քան 15.400 դասախոսություն։

Աճել է բժշկա-սանիտարական հաստատությունների քանակը։ 1913 թվականի համեմատությամբ, 1950 թվականին հիվանդանոցների թիվը աճել է ավելի քան 8 անգամ, մահճակալների թիվը՝ մոտ 40 անգամ, բուժարաններինը՝ 15 անգամ, դեղատներինը՝ ավելի քան 11 անգամ։

Ստալինյան հոգատարությամբ են շրջապատված մայրերն ու երեխաները։ 1651 բազմազավակ մայրեր պարգևատրվել են «Մայրության փառք» շքանշանով, 41.642 մայրեր «Մայրության մեդալ» մեդալով, 607 մայրեր արժանացել են «Հերոսուհի մայր» պատվավոր կոչման։ 1945—1950 թվականին բազմազավակ մայրերին տրվել է 300 միլիոն ռուբլի պետական նպաստ։

Բարձրացել է գրքերի և թերթերի պարբերականությունն ու տիրաժը։ Հետպատերազմյան տարիներին հայերեն լեզվով հրատարակվել են Մարքսի և Էնգելսի բոլոր հիմնական աշխատությունները։ Արդեն լույս են տեսել Վ. Ի. Լենինի Երկերի չորրորդ հրատարակության մինչև 21-րդ հատորը և

Ի. Վ. Ստալինի Երկերի մինչև 12-րդ հատորը։ Հայպետհրատը 1948 թվականին հրատարակել է 342 անուն գիրք՝ մոտ 2,5 միլիոն օրինակ տիրաժով, 1949 թվականին՝ 501 անուն գիրք՝ 3 միլիոն 755 հազար օրինակ տիրաժով, իսկ 1950 թվականին՝ 608 անուն գիրք, մոտ 4 միլիոն օրինակ տիրաժով։ Մեծ թվով գրքեր են լույս տեսել Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի, Վ. Մ. Մոլոտովի անվան Պետական համալսարանի, Հեռակա Մանկավարժական ինստիտուտի հրատարակչությունների, Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության և այլ կազմակերպությունների կողմից։ Ռեսպուբլիկայում ներկայումս լույս է տեսնում ավելի քան 53 թերթ։

Բուռն կերպով ծաղկել է սովետահայ արվեստը։ Ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում գործում են 16 մշտական դրամատիկ և երաժշտական թատրոններ։ Այդ թվում՝ Միութենական հռչակ վայելող Ալ. Սպենդիարյանի անվան Պետական օպերայի և բալետի թատրոնը, որը սովետական և ազգային օպերային արվեստի զարգացման գործում ձեռք բերած նվաճումների համար



պարգևատրվել է Լենինի շքանշանով, Գ. Սունդուկյանի անվան Պետական դրամատիկական թատրոնը, Լենինականի Պետական դրամատիկական թատրոնը և ուրիշներ։

Ղեկավարվելով «Զվեզդա» և «Լենինգրադ» ամսագրերի, «Դրամատիկ թատրոնների ռեպերտուարի և նրա բարելավման միջոցառումների մասին», «Մեծ կյանք» կինոֆիլմի և «Վ. Մուրադելու «Մեծ բարեկամություն» օպերայի մասին» ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի պատմական որոշումներով, ինչպես նաև իդեոլոգիական հարցերի վերաբերյալ Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի որոշումներով, Սովետական Հայաստանի արվեստի աշխատողները արմատապես վերակառուցեցին իրենց ստեղծագործական աշխատանքը։

Դրամատիկ թատրոնների ռեպերտուարը հարստացավ մեր սոցիալիստական Հայրենիքի, սովետական մարդկանց հերոսական առօրյան արտացոլող նոր պիեսների բեմադրություններով։ Ստեղծվեցին և ռեսպուբլիկայի թատրոններում հաջողությամբ բեմադրվեցին ժամանակակից թեմատիկայով դրամատիկական գործեր, այդ թվում՝ Դ. Տեր-Գրիգորյանի և Լ. Ղարագյոզյանի «Այս աստղերը մերն են» պիեսը, որի բեմադրու-

թյունը Գ. Սունդուկյանի անվան թատրոնում արժանացավ Ստալինյան մրցանակի, Գ. Գաբրիելյանի և Մ. Ջամանյանի՝ «Արարատյան դաշտի այգիկը», Գ. Բորյանի՝ «Բարձունքներում», Մ. Քոչարյանի՝ «Հարազատ մարդիկ», Մ. Օվչիննիկովի՝ «Խիղճ խում», Մ. Ջամանյանի՝ «Մեր թանկագին հյուրերը», Հ. Ղափլանյանի՝ «Ուսուցիչը»: Ռեսպուբլիկայի թատրոններում բեմադրվեցին ռուսական ժամանակակից դրամատուրգիայի լավագույն գործեր:

Վերջին տարիների ընթացքում զգալի աշխատանք է կատարվել օպերային թատրոնի կողմից:

Օրգինալ օպերաներից բեմադրվել են Ան. Տեր-Ղևոնդյանի՝ «Արևի շողերում», Հ. Ստեփանյանի՝ «Հերոսուհի», Ա. Տիգրանյանի՝ «Դավիթ բեկ» օպերաները:

Զգալի աշխատանք է կատարված ստեղծագործական նոր և երիտասարդ կադրերի առաջքաշման ուղղությամբ:

Ուժեղ բեկում է առաջացել կոմպոզիտորների աշխատանքում, մասնավորապես վերջին երեք տարում: Այդ շրջանում երիտասարդ կոմպոզիտոր Ալ. Հարությունյանը գրեց իր «Հայրենիք» կանտատան, որը արժանացավ Ստալինյան մրցանակի, «Տոնա-



կան նախերգանք» ձայնի և տրուբայի համար կոնցերտները, Էդ. Միրզոյանը գրել է «Հայաստան» և «Տոնական» կանտատաները, Ա. Բաբաջանյանը՝ ջութակի կոնցերտը, «Հերոսական բալլադան», Ա. Այվազյանը՝ «Հին հիվանդություն» երաժշտական կոմեդիան, Գ. Եղիազարյանը՝ «Բալետային սյուիտա», երիտասարդ կոմպոզիտոր Գ. Խաչատրյանը՝ «Ասք Սովետական Հայաստանի մասին» կանտատան:

Մեծ կտավի աշխատություններից բացի գրվել են մեծ քանակությամբ երգեր և կամերային ստեղծագործություններ:

Հայֆիլհարմոնիայում գործում է 10 երաժշտական միավոր, այդ թվում՝ սիմֆոնիկ նվագախումբը, ժողովրդական երգի և պարի վաստակավոր անսամբլը, Պետական երգեցիկ խումբը, Էստրադային նվագախումբը, Սայաթ-Նովայի անվան գուսանական երգի վաստակավոր անսամբլը, Կոմիտասի և Սպենդիարյանի անվան կվարտետները, ժողովրդական գործիքների անսամբլները և սոլիստների խումբը:

Վերջին 4 տարում մեծ նվաճումների է հասել Սովետական Հայաստանի կերպարվեստը: Ստեղծվել են արդիական և սովետական թեմատիկայով այնպիսի լավագույն գործեր,

ինչպիսիք են Հ. Կոչոյանի՝ «Բերքի տոնը», Արա Սարգսյանի՝ Ստալինի, Կիրովի, Միկոյանի մոնումենտները, Հ. Ջարգարյանի՝ «Սևանչինի հաղթանակողները», Ա. Բեքարյանի՝ «Կառուցողները», Է. Իսաբեկյանի՝ «Տանյան», Ս. Ստեփանյանի՝ Լենինի մոնումենտը և այլն։

Սոցիալիստական ռեալիզմի մեթոդը դարձավ Սովետական Հայաստանի նկարիչների միակ ստեղծագործական մեթոդը։

1949 թվականին կազմակերպվել են բազմաթիվ անհատական, ստեղծագործական հաշվետվություններ և ցուցահանդեսներ։

1950 թվականի նոյեմբերին բացվել է Հայաստանում Սովետական կարգերի հաստատման 30-ամյակին նվիրված ցուցահանդեսը, որտեղ ցուցադրված 369 աշխատանքները վկայում են սովետահայ կերպարվեստի աննախընթաց վերելքի և մեր արվեստագետների վարպետության մասին։

Սովետական Հայաստանի արվեստի և գրականության աշխատողներից 16 մարդ Ստալինյան մրցանակի լաուրեատներ են, 48-ը՝ ժողովրդական արտիստ, 6-ը՝ ժողովրդական նկարիչ, 37-ը՝ արվեստի վաստակավոր գործիչ և 142-ը՝ վաստակավոր արտիստ։



Քննադատորեն յուրացնելով անցյալի հարուստ ժառանգությունը, Սովետական Հայաստանի քանդակագործները, ճարտարապետները ստեղծել են սովետական մարդկանց հերոսական արտացոլող նշանավոր գործեր, իրագործել են մի շարք մոնումենտալ կառուցումներ։ 1950 թվականի նոյեմբերի 29-ին, Սովետական Հայաստանի պանծալի 30-ամյակի օրը, Երևանում բացվեց ընկեր Ստալինի Մոնումենտ-քանդակը։ Այդ հիասքանչ կոթողը հայ ժողովուրդը կանգնեցրել է ի նշան մեծ Ստալինի նկատմամբ ունեցած իր անսահման երախտագիտության, սիրո և նվիրվածության։ Սքանչելի են Երևանում բացված Խաչատուր Աբովյանի արձանը և Նելսոն Ստեփանյանի կիսանդրին։

Վերելքի և զարգացման ուղին է բռնել սովետահայ գրականությունը։ «Անցած շրջանում սովետական գրողներն ու բանաստեղծները,— ասում է ընկ. Գր. Հարությունյանը, — իրենց ստեղծագործությունների մեջ շարունակում էին զարգացնել սոցիալիստական ռեալիզմի մեթոդը, որը լայն հնարավորություն է տալիս արտահայտելու սովետական հայրենասիրության գաղափարները, ցույց տալու սոցիալիզմի հաղթանակը»։

Այդ էլ հենց կազմել է սովետահայ արձակի, պոեզիայի և դրամատուրգիայի գլխավոր բովանդակությունը։

Սովետահայ գրողները վերջին չորս տարիների ընթացքում ստեղծել են մի շարք նշանավոր երկեր։ Ավ. Իսահակյանը գրեց ընկեր Ստալինի ծննդյան 70-ամյակին նվիրված հայ ժողովրդի նամակը չափածո ձևով։ Ուշագրավ են Ն. Զարյանի՝ «Հացավանը», «Արմենուհին», Գ. Սարյանի՝ «Հրաշալի սերունդ»-ը, Գ. Էմինի բանաստեղծությունների նոր գիրքը, Վ. Անանյանի՝ «Սևանի ափին» մանկա-պատանեկական վեպը, Վ. Դավթյանի՝ «Տուրուխանյան երկրում» պոեմը, Սերո Խանզադյանի՝ «Մեր գնդի մարդիկ» վեպը և այլ գործեր։ Հանդես է եկել երիտասարդ ստեղծագործողների մի նոր սերունդ։

* * *

Զգալի են հաջողությունները ռեսպուբլիկայի աշխատավորության կենցաղային և նյութական բարեկեցության ասպարեզում։ Կերպարանափոխվել են Սովետական Հայաստանի մայրաքաղաք Երևանը, քաղաքնե-



րը, շրջանային կենտրոններն ու գյուղերը։ Միայն վերջին չորս տարում Երևանում կառուցվել է 235 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Բացվել են բազմաթիվ ընդարձակ և գեղեցիկ ասֆալտապատ փողոցներ և պողոտաներ։ Ռեսպուբլիկայի քաղաքների և շրջկենտրոնների բարեկարգման և կոմունալ ձեռնարկությունների կահավորման նպատակով, վերջին չորս տարում Հայկական ՍՍՌ Կոմունալ տնտեսության մինիստրության գծով ծախսվել է 56 միլիոն 129 հազար ռուբլի։ 1950 թվականին նույն մինիստրության գծով ասֆալտապատվել է 727 հազար քառակուսի մետր փողոց և հրապարակ, սալահատակվել է 1.150 քմ. փողոց, ընդարձակվել է ջրմուղի ցանցը, տեղադրվել են հարյուրավոր էլեկտրական դեկորատիվ սյուներ։

Մեծ չափով ընդարձակվել է կոոպերատիվ և կոլխոզային առևտուրը, լայն սպառման առարկաների արտադրությունը։ Ռեսպուբլիկայի քաղաքներն ու գյուղերը ծածկվել են առևտրական բազաների, խանութների, կրպակների, ճաշարանների խիտ ցանցով։ Անցած չորս տարիներին Հայկական ՍՍՌ Առևտրի մինիստրության գծով բացվել է մոտ

1.890 խանութ և կրպակ, 142 ճաշարան և բուֆետ, նույն մինիստրությունը հետպատերազմյան հնգամյակում կատարել է 30 միլիոն ռուբլու կապիտալ ծախսեր։ Տարեցտարի բարձրանում է ապրանքաշրջանառությունը։ Միայն 1949 թվականին Առևտրի մինիստրության սիստեմի խանութները վաճառել են 25 միլիոն ռուբլու կուլտապրանք, երաժշտական գործիք և կահկարասի։ Բարձրացել է բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը։

Աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման մասին է խոսում նաև այն փաստը, որ այժմ ավելի քան 1.365 մարդ ունեն սեփական ավտոմեքենաներ։

Սովետական Հայաստանի աշխատավորները իրենց ձեռք բերած բոլոր նվաճումների համար երախտապարտ են բոլշևիկյան պարտիային, սովետական կառավարությանը և ժողովուրդների մեծահանճար առաջնորդ ընկեր Ստալինին։

—∞—



—O—


Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

1.890 խանութ և կրպակ, 142 ճաշարան և բուֆետ, նույն մինիստրությունը հետպատերազմյան հնգամյակում կատարել է 30 միլիոն ռուբլու կապիտալ ծախսեր։ Տարեցտարի բարձրանում է ապրանքաշրջանառությունը։ Միայն 1949 թվականին Առևտրի մինիստրության սիստեմի խանութները վաճառել են 25 միլիոն ռուբլու կուլտապրանք, եռաժշտական գործիք և կահկարասի։ Բարձրացել է բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը։

Աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման մասին է խոսում նաև այն փաստը, որ այժմ ավելի քան 1.365 մարդ ունեն սեփական ավտոմեքենաներ։

Սովետական Հայաստանի աշխատավորները իրենց ձեռք բերած բոլոր նվաճումների համար երախտապարտ են բոլշևիկյան պարտիային, սովետական կառավարությանը և ժողովուրդների մեծահանճար առաջնորդ ընկեր Ստալինին։

—∞—

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Կ. ՄԱՐՔՍ.— Կուտակման բնորիան: 143 էջ, գինը 1 ռ. 40 կոպ.։

Մ. ԳՈՐԿԻ.— Երկերի ժողովածու: Հատոր 6-րդ, 283 էջ, գինը 13 ռ. 65 կոպ.։

Բ. ՊՈԼԵՎՈՅ.— Մենք սովետական մարդիկ ենք: 453 էջ, գինը 10 ռ. 85 կոպ.։

ՄԻՐԶԱՅԵԼ ՄԱՆՎԵԼՅԱՆ.— Թերթիկներ իմ կյանքից: 171 էջ, գինը 5 ռ. 60 կոպ.։

ՀՈՎՀ. ՇԻՐԱԶ.— Գիրք խաղաղության և սիրո: 138 էջ, գինը 4 ռ. 95 կոպ.։

ԳՐՁԵԼՅԱՆ Ռ. Ա., ԼԵԲԵԴԵՎ Մ. Մ.— Ինչպես ճիշտ հաշվել և կառուցել էլեկտրական ցանցը կոլխոզներում: 74 էջ, գինը 1 ռ. 40 կոպ.։

—O—

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

